Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ԱՊՐԻԼ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Նյութեր զրույցների համար



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 3—52—78։



# ԶՐՈՒՅՑ ԽԱՄ ՈՒ ԽՈՊԱՆ ՀՈՂԵՐԻ ՅՈՒՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Պրոֆ. Խ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումը մշակեց մեր երկրի գյուղատնտեսության հետագա վճռական զարգացման հոյակապ ծրագիրը, որի կիրառումը 2—3 տարվա ընթացքում լիովին կապահովի սովետական ժողովրդի պահանջմունքները պարենային մթերքների ու լայն սպառման ապրանքների նկատմամբ և թեթև ու սննդի արդյունաբերության համար՝ կստեղծի անհրաժեշտ հումքի պաշարներ։

Մեր պարտիայի Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումը ընդգծեց, որ մթերքների լիակատար առատություն ստեղծելու համաժողովրդական այդ խնդրի լուծման գործում առանձնապես կարևոր նշանակություն ունի հացահատիկային կուլտուրաների հետագա զարգացումը, որը հանդիսանում է ամբողջ գյուղատնտեսական արտադրության հիմքը։

Դրա հետ միասին նշվեց, որ հացահատիկի արտադրության ներկա վիճակը չի ծածկում ժողովրդական տնտեսության կողմից առաջադրված պահանջները: Պլենումը խնդիր դրեց՝ հացահատիկի, պարենային, ֆուրաժային, ձավարատու և հատիկաընդեղենի կուլտուրաների արտադրությունը խիստ ավելացնել, որպեսզի մոտ տարիներս հացի պետական գնումներն ու մթերումները 1953 թվականի համեմատությամբ ավելանան 35—40 տոկոսով:

Մեր պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված այս կարևոր հարցի լուծման գործում, սոցիալիստական բոլոր դաշտերի բերքատվության բարձրացման հետ միասին, հսկայական նշանակություն ունի նոր հողերի յուրացումը: Մեր մեծ Սովետական Հայրենիքի անծայրածիր սահմաններում՝ և՛ հեռավոր հյուսիսում, և՛ հարավում, և՛ ՍՍՌ Միության տարբեր այլ մասերում մենք ունենք մշակելի հողային տարածությունների լայնացման խոշոր ռեզերվներ: Այդպիսի ռեզերվներ մենք ունենք Ղազախստանում ու Մերձուրալյան մարզերում, Անդրվոլգյան տափաստաններում, Սիբիրի անտառահման հարթավայրերում ու այլ տեղերում: Այդ լայնածավալ տարածությունների



սահմաններում մենք ունենք բարձր բերքատվության ընդունակ միլիոնավոր հեկտար հողային տիպեր՝ սևահողեր ու նրանց մոտ սևահողանման ու շագանակագույն հողեր, որոնք առանց խոշոր ներդրումների, առանց ոռոգման ու մելիորատիվ միջոցառումների ի վիճակի են հենց առաջին տարվանից երկրին տալ հսկայական քանակությամբ հացահատիկ:

Ահա այդ հիման վրա Կենտկոմի Մարտյան պլենումը որոշել է Ղազախստանի, Սիբիրի, Ուրալի, Մերձվոլգյան տարածությունների, մասամբ Հյուսիսային Կովկասի շրջաններում 1954—55 թվականներին ոչ պակաս, քան 13 միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր ներգրավել արտադրության մեջ ու դնել հացահատիկային կուլտուրաների տակ այն հաշվով, որ այդ տարածություններից 1955 թվականին ստացվի 1,1—1,2 միլիարդ փութ հացահատիկ:

Այդ հոյակապ ու համաժողովրդական գործը կազմակերպելու նպատակով նոր յուրացվող շրջաններին 1954 թվականին տրվում է 120 հազար տրակտոր, 10 հազար կոմբայն, համապատասխան քանակությամբ գութաններ, շարքացաններ, փոցխեր, կուլտիվատորներ ու այլ գործիքներ, մեքենաներ

ու արհեստանոցներ, որոնք հնարավորություն կտան նոր վայրերում լրիվ կերպով մեխանիզացիայի ենթարկել գյուղատնտեսական բոլոր աշխատանքները։ Այդ շրջանները, ինչպես նաև նոր կազմակերպվող սովխոզները, որակյալ կադրերով ապահովելու նպատակով կազմակերպվում են դպրոցներ ու կուրսեր, ինչպես նաև կադրեր են հավաքագրվում մեր Միության տարբեր մասերում։ Համարելով այդ պատվի ու համաժողովրդական մեծ գործ, մեր Միության բոլոր ռեսպուբլիկաներում ու մարզերում պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների կոչով հազարավոր երիտասարդ հայրենասերներ տարբեր տեղերից մեկնում են նոր յուրացվող հողերի շրջանները, այդ մեծ նպատակին ծառայելու համար։

***

Այժմ անհրաժեշտ է մի քանի խոսքով կանգ առնել այն հարցի վրա, թե որտեղ են այդ նոր յուրացվող հողերը և ինչ են նրանք իրենցից ներկայացնում։

Պլենումի որոշման համաձայն, յուրացվող խամ ու խոպան հողերի հիմնական մասսիվները գտնվում են Հյուսիսային, մասամբ Արևելյան Ղազախստանի մարզերում, Արև-



մտյան Սիբիրում, մասնավորապես Իշիմի ու Բարաբայի տափաստաններում, Ալթայի երկրամասում, և ընդգրկում են Չուվաշական ավտոնոմ ռեսպուբլիկայի (Ուֆա), Չկալովի ու Կուրգանսկի մարզերի զգալի տերիտորիան, որը կազմելով մի մեծ գոտի՝ երեք կողմից շրջապատում է Ուրալը։ Այդ ամբողջ հողային տարածությունները ծածկված են տարբեր տեսակի ու որակի սևահողերով ու շագանակագույն հողերով, որոնց ընդհանուր ֆոնի վրա առանձին տեղերում կարելի է գտնել ճահճացած ու աղիացած, ալկալիացած ու խոնավ մարգագետնային հողերի նըմուշներ։ Այդ բոլոր սևահողերը աչքի են ընկնում առաջին հերթին նրանով, որ նրանք իրենց վերին շերտերում պարունակում են բավականին մեծ քանակությամբ օրգանական նյութ՝ հումուս, որը կազմում է 5—12 տոկոս, առանձին տեղերում ավելի շատ։ Հումուսով հագեցած շերտի հզորությունը (նրա հաստությունը) հասնում է մեկ մետրի։ Բավականին շատ են նրանց մեջ նաև բույսի սննդառության համար անհրաժեշտ ազոտ ու ֆոսֆորական թթուն։ Արտաքին կառուցվածքի տեսակետից այս սևահողերի վերին շերտը 10—20 սմ. սահմաններում դարերի ընթացքում ծածկված լինելով խիտ բուսա-

կանությամբ, խիստ կերպով ցանցավորված է, ամուր ճմակալված, որը բավականին դիմադրություն է ցույց տալիս մշակող գործիքին: Այդ շերտից ներքև, մասամբ և այդ շերտի ներքին մասում նկատվում է վերին ստորիճանի լավ արտահայտված կնձիկային կամ հատիկավոր ստրուկտուրա, որը բույսի զարգացման համար ստեղծում է միանգամայն բարենպաստ ֆիզիկական հատկություններ: Սևահողերի մեխանիկական կազմը հիմնականում ծանր է ու ավազակավային, բայց առանձին շրջաններում երևան է գալիս թեթև, մասնակի ավազոտ ու անգամ քարքարոտ մեխանիկական կազմ. բացի դրանից, այդ սևահողերը աղիացած չեն, իրենց ներքին շերտերում միայն պարունակում են զգալի քանակությամբ կիր, որը հարավային շրջաններում բարձրանում է ու մոտենում հողի մակերեսին:

Սևահողերի այդ գոտին սկսվում է համարյա Վոլգայի ձախ ափերից, Ուֆայի ու Չկալովի վրայով անցնում է Ուրալի հարավարևելյան փեշերը, ապա Արևմտյան Սիբիրի և Հյուսիսային Ղազախստանի վրայով լայն գոտով հասնում մինչև Նովոսիբիրսկ ու Բառնաուլ:

Այդ սևահողերի սահմաններում կարելի է



զատել հետևյալ ենթատիպերը, որոնք տարբերվում են իրարից ինչպես հումուսի քանակի ու հզորության, այնպես էլ ստրուկտուրայի ու կարբոնահատության տեսակետից:

**Տափաստանային գոտու սևահողեր**, որոնք իրենց որոշ առանձնահատկություններով տարբերվում են Ուկրաինական տափաստանների սևահողերից և այս կապակցությամբ այստեղ կոչվում են Արևմտյան Սիբիրի սևահողեր: Սևահողերի այս ենթատիպը կազմում է նոր յուրացվող խամ ու խոպան հողերի տարածությունների ճնշող մեծամասնությունը: Այս սևահողերի հումուսով հարուստ շերտը ունի մինչև 1 մետր հզորություն, 4—6 տոկոս հումուս, որտեղ կան մեծ քանակությամբ ազոտ և ֆոսֆորական թթու: Այդ հողն ունի հատիկավոր ստրուկտուրա, որը սկսվում է հողի առաջին շերտից 10—20 սմ. ներքև ու գնում է բավականին խոր: Մեխանիկական կազմի տեսակետից այս սևահողերի հիմնական մասը բավականին ծանր է՝ միայն առանձին տեղերում, օրինակ Իշիմի տափաստանի հարավային մասում ու Մագնիտագորսկից հարավ-արևելք ընկած տարածություններում մենք հանդիպում ենք ավելի թեթև՝ ավազոտ ու կոպիտ մեխանիկական կազմ ունեցող սևահողերի:

**Հզոր և ուռչած սևահողեր,** որոնք գտնվում են մտավորապես Ուֆայի ու Չկալովի միջև ընկած սահմաններում: Այս սևահողերը հանդիսանում են Սովետական Միության ամենաբարձր որակի, ամենահարուստ սևահողերի օրինակը, որը պարունակում է մինչև 10—12 տոկոս հումուս, ունի մինչև 120 սմ. հզորություն և բացառիկ լավ կնձկանման ու հատիկային ստրուկտուրա:

**Հարավային** ու մասամբ **կարբոնատային սևահողեր,** որոնք գլխավորապես գտնվում են Ուրալից հարավ ու Չկալովից դեպի հյուսիս-արևմուտքի ուղղությամբ: Այս սևահողերն արդեն խիստ կերպով տարբերվում են նախորդից նրանով, որ նրանց հզորությունը այստեղ 50—60 սմ. չի անցնում, հումուսի քանակը տատանվում է 4—5 տոկոսի սահմաններում, ստրուկտուրան թույլ է արտահայտված ու հարուստ է կարբոնատներով ավելի շատ, քան այդ անհրաժեշտ է լավ հողի համար:

Վերջապես սևահողային գոտու ամբողջ տարածությամբ՝ Վոլգայի ափերից մինչև Կրասնոյարսկի շրջակայքը, այդ հողերը հյուսիսի ուղղությամբ անցնում են ու խառնվում այսպես կոչված անտառատափաստանային գոտու **լվացված սևահողերին:**



Լվացված սևահողեր են կոչվում նրանք այն պատճառով, որ հյուսիսի ուղղությամբ ուժեղացող տեղումների ազդեցության տակ կարբոնատներն ու այլ նյութեր այս սևահողերում լվացվել են և տարածվել դեպի խորին շերտերը: Լվացված սևահողերը բավականին հարուստ են՝ նրանք դեռ պարունակում են մինչև 7—8 տոկոս հումուս, նրանց հզորությունը հասնում է 80—100 սմ., իսկ ստրուկտուրան նույնպես լավ է արտահայտված:

**Շագանակագույն հողերի** գոտին սկսվում է Ռոստովի մարզից ու Ստալինգրադի Ակտյուբինսկի վրայով անցնում է դեպի արևելք, հարավ-արևելք ու հասնում Սեմիպալատինսկ՝ Ալթայի լեռնային ստորոտները: Առաջանալով ավելի չոր պայմաններում, սևահողերից տարբերվում են թույլ հզորությամբ ու համեմատաբար քիչ հումուս են պարունակում: Նրանց մեջ եղած հումուսի քանակը տատանվում է 3—5 տոկոսի սահմաններում: 4—5 տոկոս հումուս պարունակող այդ հողերը կոչվում են մուգ-շագանակագույն հողեր, որոնք գտնվում են հյուսիսային մասերում ու կազմում մի անցողիկ գոտի, որը շագանակագույն հողերը միացնում է սակավահումուս սևահողերին: Նրանք

ունեն թույլ ստրուկտուրա, որոշ չափով ամրացած են, հարուստ կարբոնատներով և ունեն մինչև 40—50 սմ. հզորություն։

Այստեղ բերած համառոտ տեղեկությունները՝ նոր յուրացվող շրջանների հողերի մասին, ցույց են տալիս, որ դարերի ընթացքում չմշակված այդ հողերն ըստ իրենց հատկությունների հարուստ հողեր են, ունեն հացահատիկային կուլտուրաների զարգացման համար անհրաժեշտ բարենպաստ կազմ ու կառուցվածք, վնասակար աղերից ազատ են և այդ կապակցությամբ համարյա առանց կապիտալ ներդրումների, առանց մելիորատիվ աշխատանքների ի վիճակի են լավ մշակման դեպքում ապահովել 10—12 ցենտներից ոչ պակաս հացահատիկի բերք՝ մեկ հեկտարից։ Այդ շրջանները փոխադրվող հզոր տեխնիկան, ՄՏ կայանները, փորձառությամբ զինված մեծ բանակ կազմող, հայրենասիրական ոգով տոգորված սովետական մարդիկ կապահովեն պարտիայի կողմից մեր առջև դրված 13 մլն. հեկտար անբնակ ու կիսաբնակ տարածությունները կուլտուրական դաշտերի վերածելու, հացի նոր շտեմարան ստեղծելու համաժողովրդական մեծ գործի լրիվ ու անշեղ կատարումը։

---

# ՉԻՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՐԿՐԻ ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

### Մ. ԴՈՄՈԳԱՑԿԻ

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան թևակոխեց իր գոյության հինգերորդ տարին։ Անցած չորս տարիները երկրի բուռն զարգացման, նրա ուժերի աճման, ժողովրդական դեմոկրատիայի պետական կարգի ամրապնդման, դեմոկրատական մեծ վերափոխությունների տարիներ էին։

Ժողովրդական Չինաստանի արտադրողական ուժերի աճման համար մեծագույն նշանակություն ունեցավ ագրարային ռեֆորմը, որը հողը հանձնեց գյուղացիներին և վերացրեց հողօգտագործման ֆեոդալական սիստեմը։ Ռեֆորմը անցկացվեց դասակարգային կատաղի պայքարի պայմաններում։ Ռեակցիոն տարրերը և կալվածատերերը անում էին հնարավոր ամեն ինչ՝ ագրարային վերափոխություններին խանգարելու համար։ Սակայն ժողովրդական մասսաները կոմու-

նիստական պարտիայի ղեկավարությամբ աչալրջորեն հետևում էին թշնամիների ոտնձգություններին և պաշտպանում դեմոկրատական նվաճումները։

Ագրարային ռեֆորմը հիմնականում ավարտվեց 1953 թվականին։ Չինաստանի 300 միլիոն հողազուրկ և սակավահող գյուղացիներ ստացան 47 միլիոն հեկտար հող։ Բացի դրանից, գյուղացիներն ազատվեցին կալվածատիրական սորկացումից։ Իսկ թե որքան քայքայող էր այդ սորկացումը, երևում է նրանից, որ գյուղացիները ամեն տարի կալվածատերերին հողի համար վճարում էին այնքան վարձավճար, որ դրանով կարելի էր գնել հիսուն միլիոն տոննա հացահատիկ։

Հողային ռեֆորմի անցկացումից հետո չինական գյուղում սկսեցին զարգանալ աշխատանքի կոոպերատիվ ձևերը՝ փոխադարձ օգնության ժամանակավոր կամ սեզոնային խմբերը, փոխադարձ օգնության մշտական խմբերը և գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվները։ 1953 թվականին այս կամ այն կոոպերատիվ ձևի մեջ էր միավորվել Չինաստանի բոլոր գյուղացիական տնտեսությունների ավելի քան 43 տոկոսը։ Փոխադարձ օգնության աշխատան-



քային բրիգադաների քանակը, որոնք ըստ էության սաղմային սոցիալիստական բնույթ են կրում, հասավ արդեն համարյա 10 միլիոնի։ Բացի այդ բրիգադաներից, երկրում կային ավելի քան 14 հազար գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներ։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իրագործված հսկայական սոցիալական վերափոխությունները նպաստավոր պայմաններ ստեղծեցին երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերականգնման ու զարգացման համար, է՛լ ավելի ամրապնդեցին ժողովրդա-դեմոկրատական իշխանությունը, հիմք ստեղծեցին Չինաստանի պլանային տնտեսական շինարարության համար։

Չինաստանի Կոմունիստական պարտիայի գլխավոր գիծը և երկրի տնտեսական զարգացման բնագավառի գլխավոր խնդիրներն այն են, որպեսզի արդյունաբերական տեսակետից առաջներում հետամնաց Չինաստանը վերածվի սոցիալիստական ինդուստրիայի երկրի, աստիճանաբար իրագործվի գյուղատնտեսության և տնայնագործական արդյունաբերության սոցիալիստական վերակառուցումը։ Այդ պահանջներին համապատասխան էլ որոշվեցին Չինաստանի ա-

ռաջին հնգամյա պլանի հիմնական խնդիրները, այն է՝ գլխավոր ուժերը կենտրոնացնել ծանր արդյունաբերության զարգացման վրա՝ որպես ինդուստրացման և երկրի պաշտպանունակության ամրապնդման անհրաժեշտ պայմանի. պատրաստել շինարարների կադրեր, ապահովել տրանսպորտի, թեթև արդյունաբերության, գյուղատնտեսության և առևտրի հետագա զարգացումը, ամեն կերպ զարգացնել կոոպերացիան՝ ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ տնայնագործական արդյունաբերության մեջ. անշեղորեն բարձրացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը։

1949 թվականին Չինաստանի համախառն արդյունաբերական արտադրանքի արժեքը երկրի էկոնոմիկայի ընդհանուր բալանսում հասնում էր հազիվ 17 տոկոսի։ Առաջին հընգամյա պլանի սկզբներին այդ մակարդակը բարձրացավ և կազմեց 28 տոկոս։

Եթե էկոնոմիկայի զարգացման 1952 թվականի՝ պլանային շինարարության սկզբին նախորդած տարվա մակարդակը համեմատելու լինենք 1949 թվականի մակարդակի հետ, ապա պարզ կդառնա, թե ինչպիսի արագ տեմպերով է առաջ ընթացել տնտեսական շինարարությունը։ 1949 թվականի հա-



մեմատությամբ 1952 թվականին չուգունի թողարկումը կազմեց 764 տոկոս, պողպատինը՝ 846, գլանվածքինը՝ 848, էլեկտրաէներգիայինը՝ 164, ածխինը՝ 202, նավթինը՝ 358, ցեմենտինը՝ 433, մետաղահատ հաստոցներինը՝ 650, բամբակե գործվածքեղենինը՝ 287, թղթինը՝ 331, ցորենի ալյուրինը՝ 220, շաքարինը՝ 199 տոկոս։

Այսպիսով, ձեռնամուխ լինելով առաջին հնգամյա պլանի կենսագործմանը, չին ժողովուրդը հենվում էր արդեն վերականգնման շրջանում ձեռք բերած փորձի և նվաճումների վրա։

Հաջող ընթացավ էկոնոմիկայի զարգացումը նաև հնգամյակի առաջին տարում։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի քանակի ավելացման և խնայողության համար ծավալված մասսայական մրցության շնորհիվ գերակատարվեցին պլանային առաջադրանքները։ Այսպես, վառելիքի արդյունաբերությունը տարեկան պլանը կատարեց 105,7 տոկոսով, ածխի հանույթի պլանը կատարվեց 106 տոկոսով, նավթինը՝ 108,7 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրության պլանը՝ 103,7 տոկոսով։ Ծանր արդյունաբերությունը համախառն արտադրանքի պլանը կատարեց

ավելի քան 108 տոկոսով։ Մանր արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը ավելի քան մեկ երրորդով գերազանցեց 1952 թվականի մակարդակը։

Կատարվել ու գերակատարվել են ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, տրանսպորտի և կապի զարգացման պլանները։ Տնտեսվել են հսկայական քանակությամբ միջոցներ, հումք և նյութեր։

Այս բոլորի հետևանքով երկրի էկոնոմիկայում ավելացավ պետական արդյունաբերության և առանձնապես ծանր արդյունաբերության բաժինը։

1953 թվականին աննպաստ կլիմայական պայմանների պատճառով հնարավոր չեղավ կատարել գյուղատնտեսության բերքատվության բարձրացման պլանը։ Չնայած դրան, ճացահատիկի համախառն բերքը այնուամենայնիվ գերազանցեց 1952 թվականի մակարդակը, որը ամենաբարձր մակարդակն էր Չինաստանի հողագործության պատմության մեջ։

Ժողովրդական իշխանությունը հսկայական միջոցներ է ներդնում ծանր արդյունաբերության, տրանսպորտի, կապի, թեթև արդյունաբերության զարգացման, իրրիգացիոն կառուցումների շինարարության համար։



Տարվա ընթացքում տեղի էր ունենում 130 խոշոր օբյեկտների կառուցումը։ Տարվա վերջին շարք մտան մետաղե խողովակների ավտոմատացված գործարանը, Անշանի մետալուրգիական կոմբինատի ռելսաձողի ցեխը և խոշոր դոմենյան հնոցներ։ Երկրում կառուցված շենքերի ընդհանուր տարածությունը կազմեց 27 միլիոն քառակուսի մետր։

Անցկացվեցին երկաթուղային և խճուղային ինը նոր ճանապարհներ՝ ավելի քան հինգ հազար կիլոմետր երկարությամբ։ Շարունակվում էր վիթխարի իրրիգացիոն կառուցումների շինարարությունը Խուանխե և Յունդինխե գետերի վրա։

Հնգամյա պլանին համապատասխան՝ արդյունաբերական ձեռնարկություններ են ստեղծվում երկրի բոլոր շրջաններում։ Խոշոր գործարաններ, ֆաբրիկաններ և էլեկտրակայաններ են կառուցվում երկրի ծայրամասերում, որոնց զարգացման մասին ոչ ոք չէր մտածում հին Չինաստանում։ Երկաթուղային և խճուղային նոր ճանապարհները տնտեսական տեսակետից նախկինում հետամնաց այդ շրջանները կկապեն կենտրոնական նահանգների հետ։

Չինաստանի տնտեսական շինարարության բնորոշ առանձնահատկությունն այն է, որ

ստեղծվում են արդյունաբերության նոր ճյուղեր, որոնց մասին գաղափար չունեին հին Չինաստանում։

Չինական արդյունաբերությունը այժմ արդեն թողարկում է մինչև 3.000 կիլովատ կարողությամբ հիդրոտուրբիններ, դիզելային կոպրաներ, էլեկտրազոդման ապարատներ, լեռնահանքային սարքավորում։ 1950 թվականին Զունցինի մետալուրգիական կոմբինատը թողարկեց հայրենական ռելսերի առաջին պարտիան, իսկ այժմ իր արտադրանքն է մատակարարում՝ երկաթուղային նոր ճանապարհների կառուցման համար։ Հինգ հարյուր կիլոմետր երկարություն ունեցող Զունցին—Չենդու երկաթուղին հագեցված է այդ գործարանի ռելսերով։

Շանհայի փոքր գործարաններից մեկը վերակառուցվելուց հետո, դարձավ մի խոշոր ձեռնարկություն, որը էլեկտրամոտորներ, տրանսֆորմատորներ և գեներատորներ է թողարկում։

Չինաստանի լեռնաարդյունաբերությունը այժմ ստանում է հայրենական հանքահատ մուրճեր և հարստացուցիչ ֆաբրիկաների սարքավորում։ Չինաստանի ձեռնարկությունները արտադրում են ֆրեզերային դազգահներ, հղկման դազգահներ, շաղափման



դազգահներ և կարուսելային դազգահներ։ Իրրիգացիոն նոր կառուցումներում դրվում են չինական գործարաններում պատրաստված ամբարձիչ մեխանիզմներ։ Յուրացվում է մեկ խորանարդանոց էլեկտրական էքսկավատորների արտադրությունը՝ ածխահանքերի համար։

Տայյունի մեքենաշինական գործարանում արտադրվում են ներհատիչ մեքենաներ՝ ըստ սովետական հուշակավոր ներհատիչ մեքենաների գծագրերի։

Չինաստանի պողպատաձուլական արդյունաբերության մեջ արմատավորվում են ձուլման արագահոս մեթոդներ, որոնք հնարավորություն են տալիս միևնույն տարածության վրա զգալիորեն ավելացնել մետաղի արտադրությունը։ Մեքենաշինության մեջ կիրառվում են ուժային և բազմահատիչ հատման մեթոդները։ Ածխարդյունաբերության մեջ յուրացված է արագընթաց հորատման մեթոդը, արմատավորվում է նոր տեխնիկա, մեքենայացվում են աշխատատար պրոցեսները։

Չինաստանի հազարավոր նորարարներ և ռացիոնալիզատորներ օգնում են ի հայտ բերելու արտադրության մեջ թաքնված ռեզերվները։

Անշանի մետալուրգիական կոմբինատի

գլանման ցեխի բանվոր Չժան-Մինշանը
1952 թվականին հնարեց մի հարմարանք,
որը հեշտացնում է մետաղի գլանման օպե-
րացիաներից մեկի աշխատանքը։ Այդ նվաճ-
ման նշանակությունն այն էր, որ նա ակնա-
ռու կերպով ցույց տվեց, թե ինչպիսի հսկա-
յական հնարավորություններ կան արտա-
դրության պրոցեսները կատարելագործելու
համար։ Կոմբինատում մասսայական շար-
ժում սկսվեց ռացիոնալացման համար։ Այդ
շարժումը երկրին տվեց միլիոնավոր յուանի
խնայողություն։

Մեխանիկական ցեխի բանվոր Վան Զուն-
լուն հնարեց մի ունիվերսալ հարմարանք,
որը հնարավորություն տվեց բարձրացնել
սարքավորման հզորությունը, բազմապա-
տիկ բարձրացնել աշխատանքի արտադրո-
ղականությունը։ Նա մեկ տարում չորս տար-
վա նորմա կատարեց։

Գունչայլինի հանքում անցյալ տարվա հուն-
վարից մինչև հոկտեմբեր ընկած ժամանա-
կամիջոցում մտցվեց 763 ռացիոնալիզատո-
րական առաջարկություն, որը միջոցների
մեծ տնտեսում տվեց։

Ռացիոնալիզատորների և արտադրության
նորարարների շարժումն ընդգրկում է ժողո-
վրդական տնտեսության բոլոր ճյուղերը։



Էկոնոմիկայի հաջող զարգացման շնորհիվ
զգալիորեն բարելավվեց աշխատավորների
նյութական և կուլտուրական կյանքը, ավե-
լացան գյուղացիների եկամուտները։ Երկրի
բնակչության գնողունակությունը, 1952 թվա-
կանի համեմատությամբ, բարձրացավ 20
տոկոսով։

Հաջողությամբ զարգանում են կուլտուրան
և լուսավորությունը։ Այժմ երկրի 182 բու-
հերում սովորում է ավելի քան 220 հազար
ուսանող։ Երեք միլիոնից ավելի պատանի-
ներ և աղջիկներ սովորում են միջնակարգ
դպրոցներում, հիսունհինգ միլիոն երեխա-
ներ սովորում են տարրական դպրոցներում։
Միլիոնավոր բանվորներ և գյուղացիներ
գրագիտություն են սովորում անգրագիտու-
թյան վերացման դասընթացներում։

Կուլտուրայի և լուսավորության բնագա-
վառում Չինաստանի Կոմունիստական պար-
տիան այժմ ջանքերը կենտրոնացնում է
տնտեսական շինարարության կարիքների
համար պլանաչափորեն կադրեր պատրաս-
տելու վրա։ Ժողովրդական իշխանությունը
մեծ ուշադրություն է դարձնում առողջապա-
հության բարելավման վրա՝ ինչպես քաղա-
քում, նույնպես և գյուղում։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյու-

ղերում չին ժողովրդի ձեռք բերած հաջողությունները արդյունք են Չինական Կոմունիստական պարտիայի ղեկավարության՝ ընկեր Մաո Ցզե-դունի գլխավորությամբ, արդյունք են ժողովրդի դեմոկրատական դիկտատուրայի պետական կարգի ամրապնդման, ինչպես նաև արդյունք են Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ ժողովրդական Չինաստանի բեղմնավոր տնտեսական համագործակցության։

Չինաստանի համար կարևոր նշանակություն ունի Սովետական Միության օգնությունը, որը ցույց է տրվում ՍՍՌՄ-ի և Չինաստանի միջև 1950 թվականի փետրվարի 14-ին ստորագրված Բարեկամության, դաշինքի և փոխադարձ օգնության պայմանագրի և երկու կառավարությունների միջև կնքված համաձայնագրերի հիման վրա։ Սովետական կառավարությունը համաձայնվեց սիստեմատիկորեն և խոշոր մասշտաբներով բազմակողմանի տնտեսական ու տեխնիկական օգնություն ցույց տալ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային 91 նոր ձեռնարկությունների կառուցման և արդեն կառուցվող 50 ձեռնարկությունների վերակառուցման գործում։ Ընկեր Մաո Ցզե-դունը



խոսելով Չինաստանին ցույց տրվող սովետական օգնության մասին, ընկեր Գ. Մ. Մալենկովին ուղարկած հեռագրում գրել է. «Չին ժողովուրդը, եռանդով ուսումնասիրելով Սովետական Միության առաջավոր փորձը և նորագույն տեխնիկական նվաճումները, կարող է աստիճանաբար կառուցել իր հզոր, ծանր արդյունաբերությունը։ Դա խիստ կարևոր նշանակություն կունենա Չինաստանի ինդուստրացման համար, այն բանի համար, որ Չինաստանը աստիճանաբար անցնի սոցիալիզմին, ինչպես նաև Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղության և դեմոկրատիայի լագերի ուժերի ամրապնդման համար»։

Ժողովրդական Չինաստանն իր հերթին Սովետական Միությանը մատակարարում է գունավոր մետաղներ, բրինձ, բուսական յուղ, ձիթատու կուլտուրաների սերմեր, միս, ծխախոտ, թեյ, միրգ, բուրդ, ջութ, մետաքսահումք, մետաքսեղեն, կաշվեղեն և այլ ապրանքներ։ Սովետական Միությունը չինական արտահանվող ապրանքների ամենախոշոր սպառողն է։

Աճում և ամրանում են կապերը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և մյուս երկրների և, առաջին հերթին, դեմոկրատական

լագերի երկրների հետ։ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան տնտեսական և կուլտուրական մի շարք համաձայնագրեր է կնքել Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Ժողովրդական Դեմոկրատիայի եվրոպական երկրների հետ։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան համաշխարհային նոր, ավելի ու ավելի ամրապնդվող և ընդլայնվող դեմոկրատական շուկայի ակտիվ մասնակից է։ Այդ շուկայում նա ոչ միայն գտնում է Չինաստանի տնտեսական շինարարության համար անհրաժեշտ բոլոր ապրանքները, որակյալ տեխնիկական օգնություն, այլև վաճառահանում է իր արտադրանքը։

Ընդլայնվում են Չինաստանի կապերը նաև կապիտալիստական լագերի երկրների հետ։ Անցյալ տարի առևտրական համաձայնագրեր և պայմանագրեր կնքվեցին Ինդոնեզիայի, Պակիստանի, Ֆինլանդիայի, Ցեյլոնի, Ճապոնիայի, Անգլիայի, Ֆրանսիայի և կապիտալիստական մյուս երկրների կառավարությունների կամ դելեգացիաների հետ։

Լիակատար պարտություն կրեց ԱՄՆ-ի կառավարության քաղաքականությունը ժողովրդական Չինաստանը բլոկադայի են-



թարկելու ուղղությամբ։ Գնալով ավելի ու ավելի է մեծանում այն երկրների թիվը, որոնք հրաժարվում են այդ քաղաքականությունից և տնտեսական ու առևտրական կապեր են հաստատում Չինաստանի հետ։ Վերջերս Ինդոնեզիայի «Մերդեկա» թերթը գրում էր. «Մենք չենք կարող համաձայնվել ամերիկյան 16 միլիոն դոլարի օգնության հետ, երբ Արևելյան Եվրոպայի, Նոր Չինաստանի և Ռուսաստանի շուկաները մեր առաջ փակելու հետևանքով մենք տարեկան կորցնում ենք երեք հարյուր միլիոն դոլար»։ Հակառակ ամերիկյան ռեժիմի՝ Ինդոնեզիայի կառավարությունը որոշեց կաուչուկ վաճառել ժողովրդական Չինաստանին։ Այսպես են վարվում կապիտալիստական երկրների նաև շատ ֆիրմաներ։

Ոչ շատ վաղուց— չորս տարի առաջ—չին ժողովրդի թշնամիները և առաջին հերթին ամերիկյան իմպերիալիստները մոտալուտ և անխուսափելի կործանում էին գուշակում Չինաստանի ժողովրդական իշխանության համար։ Նրանք կարծում էին, թե Կոմունիստական պարտիան չի կարողանա հաղթահարել վերականգնման ժամանակաշրջանի բազմաթիվ դժվարությունները և տեղի կտա այդ դժվարությունների առաջ։ Թշնամիները

*մտադրվել էին ռազմական ավանտյուրանե-
րի և տնտեսական բլոկադայի միջոցով պար-
տության մատնել երիտասարդ Չինական
Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Սակայն այդ
բոլոր ավանտյուրիստական հաշիվները տա-
պալվեցին. Կոմունիստական պարտիան, որի
քաղաքականությունը պաշտպանում է Չի-
նաստանի ամբողջ բազմամիլիոն ժողովուր-
դը, մոբիլիզացրեց ժողովրդական մասսանե-
րին՝ դժվարությունների հաղթահարման հա-
մար և հենվելով դեմոկրատական լագերի եր-
կրների օգնության վրա, երկիրը վստահորեն
տանում է հաղթանակից հաղթանակ։ Անց-
ման շրջանում պարտիայի գլխավոր գիծն է՝
ինդուստրացնել երկիրը, կառուցել սոցիա-
լիզմի հիմքերը։ Այդ վեհ ու ազնիվ ճանա-
պարհին չին ժողովուրդը օգնություն և ա-
ջակցություն է ստանում բոլոր խաղաղասեր
ժողովուրդների և ամենից առաջ սոցիալիս-
տական լագերի ժողովուրդների կողմից։
Չինաստանի ինդուստրացման ծրագրի
կատարումը կհանդիսանա ազատ ժողովրդի
հսկայական ուժերի մի նոր վկայություն,
մի նոր հարված խաղաղության և դեմոկրա-
տիայի թշնամիներին։*

---



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՔԱՌԱԿՈՒՍԻ ՄԵՏՐ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆԻՑ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԱՐՏԱԴՐԱՆՔ ԹՈՂԱՐԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

*Օրերս Երևանի Ավտոդողերի գործարանի ա-
գիտատոր Ս. Զուրաբյանը հետաքրքիր զրույց
ունեցավ գործարանի մի խումբ բանվորների
ու բանվորուհիների հետ՝ յուրաքանչյուր քա-
ռակուսի մետր արտադրական տարածությու-
նից ավելի շատ արտադրանք թողարկելու
մասին։ Նա ասաց,— այժմ մեր երկրում լայ-
նորեն ծավալվում է հայրենասիրական մի
շարժում՝ յուրաքանչյուր քառակուսի մետր
արտադրական տարածությունից ավելի շատ
արտադրանք թողարկելու համար։ Այդ շարժ-
ման էությունն այն է, որ առանց նոր գոր-
ծարաններ, ցեխեր և արտադրական այլ շեն-
քեր կառուցելու, ավելացվում է արտադրան-
քի թողարկումը։ Մրցության նախաձեռնող-*

ները Մոսկվայի, Լենինգրադի, Ուրալի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողներն են, որոնք հասել են հիանալի արդյունքների։ Մոսկվայի էլեկտրալամպի գործարանում, որի կոլեկտիվը անցյալ տարի յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից երկու անգամից ավելի արտադրանք ստացավ, քան մինչպատերազմյան 1940 թվականը, բանվորների աշխատանքի արտադրողականությունն այդ նույն ժամանակամիջոցում բարձրացել է երեք անգամ, զգալիորեն իջել է արտադրանքի ինքնարժեքը։ Ամրապնդելով ձեռք բերած հաջողությունները, հենվելով կուտակված հարուստ փորձի վրա, էլեկտրալամպի գործարանի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները որոշել են 1954 թվականին արտադրանքի թողարկումն անցյալ տարվա համեմատությամբ ավելացնել 20 տոկոսով, երկու անգամ ավելացնել լայն սպառման առարկաների արտադրությունը, յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից ստացվող արտադրանքն ավելացնել ավելի քան 17 տոկոսով։

Ընկեր Ն. Ս. Խրուշչևը ընտրողների ժողովում խոսելով արդյունաբերության հետագա զարգացումն ապահովելու համար չօգտա-



գործված բազմահազար ռեզերվները գործի դնելու մասին, նշեց, որ առաջավոր ձեռնարկությունները կուտակել են արտադրության կազմակերպման չափազանց արժեքավոր փորձ, որի տարածումը մեր արդյունաբերությանը թույլ կտա խիստ բարձրացնել արտադրանքի թողարկումը եղած սարքավորման և գոյություն ունեցող տարածությունների պայմաններում։ Նա կոնկրետ օրինակ բերեց աղյուսի արագ թրծման մեթոդի մասին, թե ինչպես այդ մեթոդը թույլ է տալիս վառարանի մեկ խորանարդ մետրից աղյուսի թողարկումն ավելացնել մինչև 2.300 հատ, նախատեսված 1.200 հատի դիմաց։ Եթե աղյուսի բոլոր գործարաններն աշխատեն այդ մեթոդով, ապա աղյուսի արտադրությունը կավելանա երկու անգամ, առանց նոր գործարաններ կառուցելու։ Իսկ եթե աղյուսի թողարկումը ավելացվի երկու անգամ՝ գործող տեխնոլոգիայի պայմաններում, ապա դրա համար կպահանջվի նոր գործարանների շինարարության վրա ծախսել մոտ 10 միլիարդ ռուբլի։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պատմեց, որ այդ ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվել նաև իրենց մոտ, Ավտոդողերի գործարանում։ Եթե վերցնենք

վերջին տարիներում ձեռք բերած արդյունքները,— ասում է նա,— ապա այսպիսի պատկեր կստացվի. յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից 1945 թվականին թողարկվել է 1,7 ավտոդող, 1947 թվականին՝ 11,8 ավտոդող, 1949 թվականին՝ 30,0 ավտոդող, 1951 թվականին՝ 58 ավտոդող, 1952 թվականին՝ 85 ավտոդող, իսկ ընթացիկ տարում պետք է թողարկվի 96 ավտոդող: Այս թվերը ցույց են տալիս մեր գործարանի կոլեկտիվի հաջողությունը յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից ավելի շատ արտադրանք թողարկելու համար: Բայց ինչի՞ շնորհիվ է մեր գործարանը հասել այդ բարձր ցուցանիշներին և ի՞նչ հեռանկարներ կան այսուհետև յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից ավելի շատ արտադրանք թողարկելու համար:

— Առանց տեխնիկական առաջադիմության,— շարունակում է ագիտատորը,— անհնարին է պայքար մղել աշխատանքի բարձր արտադրողականության, յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից ավելի շատ արտադրանք ստանալու համար: Եթե մինչև 1950 թվականը այնպիսի աշխատատար, ծանր աշխա-



տանքներ, ինչպիսիք են հումքի փոխադրումը պահեստներից դեպի ագրեգատները, ռետինի, կիսաֆաբրիկատների և պատրաստի արտադրանքի փոխադրումը, ձեռքով էր կատարվում, ապա ներկայումս փոխադրական բոլոր աշխատանքները կատարվում են ավելի քան մեկ կիլոմետր ընդհանուր երկարություն ունեցող կոնվեյերի միջոցով:

Զգալիորեն ավտոմատացվել են նաև մյուս պրոցեսները: Ռետինի խառնուրդները նելկելու համար ներկայումս գործարանում օգտագործվում են բարձր արտադրողականությամբ աշխատող ռետինախառնիչներ, որոնցից յուրաքանչյուրն ամեն մի տաս րոպեում տալիս է 150 կիլոգրամ բարձրորակ խառնուրդ:

Կամերաների ռետինե խողովակների թողարկումը մեխանիկական սնուցման բացակայության պատճառով երկար ժամանակ գործարանի նեղ տեղն էր: Անհրաժեշտ էր արագորեն վերացնել այդ նեղ տեղը և ապահովել արտադրական ցիկլի ավտոմատացումն ու արտադրանքի որակի բարելավումը: Նորարարներ Ա. Բունիաթյանը և Յ. Կոջոյանը կարողացան լուծել այդ հարցը: Այժմ ռետինի խառնուրդը անընդհատ հոսանքի ձևով փոխադրիչը մատուցում է

սոսկիչ մեքենային։ Մեքենայի համաչափ սնուցումը բարելավեց թողարկվող արտադրանքի որակը։

Ձեռնարկության տեխնիկական հագեցվածությունը և տեխնոլոգիական բարեփոխումները հնարավորություն են տալիս ավելի արդյունավետ օգտագործել արտադրական տարածությունները։ Ուսանելի է հավաքման ցեխի փորձը. աշխատանքի տեղի լավ նախապատրաստության ուղղությամբ առաջավոր մեթոդների արմատավորումը հնարավորություն տվեց այդ ցեխում զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Դրա շնորհիվ ցեխը կարողացավ անցյալ տարվա պլանը, որ 1952 թվականի համեմատությամբ ավելացված էր 30 տոկոսով, ո՛չ միայն կատարել, այլև գերակատարել։ Ինչպես անցյալ տարի, այնպես էլ այս տարվա սկզբից ապահովվեց ցեխի համաչափ աշխատանքը։

Այնուհետև ագիտատորը մասսայաբար խրախուսում է այն աշխատողներին, որոնք աչքի ընկնող հաջողություն են ձեռք բերել յուրաքանչյուր քառակուսի մետր արտադրական տարածությունից ավելի շատ արտադրանք թողարկելու գործում։

Առանց խոշոր կապիտալ ներդրումների,



առանց լրացուցիչ արտադրական տարածությունների ավելի շատ արտադրանք թողարկելու համար սոցիալիստական մրցությունը հաջողություն կունենա, եթե դրան նախորդի համապատասխան նախապատրաստական աշխատանք։ Այդ բանում մեծ է ցեխի պետի դերը, որի վրա է ընկնում իր տեղամասում աշխատանքի կազմակերպման ամբողջ պատասխանատվությունը։

Մենք պետք է ավելի ուշադիր ուսումնասիրենք արտադրողականությունը բարձրացնելու բոլոր միջոցները։ Հատուկ լրջությամբ պետք է ուսումնասիրենք առաջավոր բանվորների փորձը և գործն այնպես կազմակերպենք, որ այն դառնա բոլորի սեփականությունը։

Մեզ մոտ կողք-կողքի աշխատում են բանվորներ, որոնք մեկ և կես—երկու նորմա են կատարում և բանվորներ, որոնք հազիվհազ հասնում են նորմայի մակարդակին։ Արտադրանքի թողարկումն ավելացնելու համար անհրաժեշտ է պայքարել, որպեսզի բոլոր բանվորները հասնեն առաջավորներին, գերակատարեն սահմանված նորմաները։

Արտադրական յուրաքանչյուր քառակուսի մետր տարածությունից ավելի շատ արտադրանք կարելի է ստանալ միայն այն դեպ-

քում, երբ գործարանը ապահովված է որակ-
յալ կադրերով, երբ այդ կադրերը լավ են
տիրապետում արտադրության տեխնոլո-
գիան, անխախտ կիրառում են տեխնոլո-
գիական ռեժիմը, իրենց ստեղծարար միտքը
ուղղում են արտադրական ընդհանուր վե-
րելքն ապահովելու նպատակին,—ասում է ա-
գիտատորը,— ահա թե ինչու մեզ մոտ կադ-
րերի որակավորման վրա մեծ ուշադրու-
թյուն է դարձվում:

Ամեն տարի առանց արտադրությունից
կտրվելու գործարանի տասնյակ բանվորներ
և ինժեներա-տեխնիկական աշխատողներ
տեխնիկական ուսուցման զանազան խըմ-
բակներում հարստացնում են իրենց տեխ-
նիկական գիտելիքները, բարձրացնում են
իրենց որակավորումը:

Միայն անցյալ տարի տեխնիկական ու-
սուցման խմբակներում ընդգրկված 181 զա-
նազան պրոֆեսիայի բանվորներ հաջողու-
թյամբ քննություն տվեցին և ստացան հա-
մապատասխան որակավորում: Նրանցից
շատերը անհրաժեշտ գիտելիքներ ձեռք բե-
րելուց հետո դարձան արտադրության առա-
ջավորներ, սկսեցին մեծ չափով գերակա-
տարել իրենց նորմաները:

Կադրերի որակավորման բարձրացման



համար հսկայական նշանակություն ունի ա-
ռաջավոր փորձի ուսումնասիրումն ու ար-
մատավորումը: Գործարանում կազմակերպ-
ված առաջավոր փորձի ուսումնասիրման
դպրոցները ղեկավարում են արտադրության
առաջավորները: Նրանք այդ դպրոցներում
ընդգրկված բանվոր-ունկնդիրներին հաղոր-
դում են իրենց փորձը, սովորեցնում արտա-
դրական օպերացիաներն արագ և որակով
կատարելու եղանակները:

Առաջավոր փորձի ուսումնասիրման դըպ-
րոցներն ավարտելուց հետո բանվորները
հաջողությամբ սկսում են կիրառել պրոգրե-
սիվ մեթոդներ, որոնց շնորհիվ հասնում են
բարձր արտադրողականության: Օրինակ,
ավտոդող հավաքողներ Հ. Ջափարյանը, Յա.
Բելյակովը, Լ. Հարությունյանը և շատ ու-
րիշներ, դպրոցն ավարտելուց հետո զգալիո-
րեն բարելավել են իրենց արտադրական
ցուցանիշները:

Զրույցի վերջում պետք է նշեմ, որ այն,
ինչ արված է, բավարար համարել չի կարե-
լի: Այս տարի ավելի մեծ խնդիրներ են դըր-
ված մեզ վրա:

Արտադրական տարածությունները ռա-
ցիոնալ օգտագործելու և պետական պլան-
ները հաջողությամբ կատարելու համար մեր

կոլեկտիվը մրցման մեջ է մտել Կիրովականի կոշկի ֆաբրիկայի և Քութայիսի ավտոգործարանի կոլեկտիվների հետ։ Այդ մըրցությունն իր դրական արդյունքն է տվել պլանի կատարման, արտադրանքի որակի բարելավման, ինքնարժեքի իջեցման գործում։ Հիմնական ցուցանիշների գծով անցյալ տարի գործարանը ապահովեց պետական պլանի կատարումը։

Մեծ են մեր հնարավորությունները։ Սոցիալիստական մրցությունը հայտնաբերում է թաքնված նորանոր ռեզերվներ, արտադրողականության բարձրացման նոր միջոցներ։

Ագիտատորի զրույցից հետո ելույթ ունեցան մի շարք ունկնդիրներ, որոնք նշեցին արտադրական տարածությունների արդյունավետ օգտագործման առաջավոր մեթոդների արմատավորման կարևորությունը և պատմեցին այդ ուղղությամբ աշխատանքի իրենց փորձը։

---



# ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

(ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Մեր երկրում բուռն թափով զարգանում է սոցիալիստական արդյունաբերությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության աճի և Սովետական պետության հզորության հիմքը։ Այժմ սովետական երկիրն ունի հզոր, տեխնիկապես կատարյալ ու բարձր զարգացման հասած արդյունաբերություն։

Կատարելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները՝ ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման վերաբերյալ, մեր երկրի աշխատավորները ձեռք են բերել փլթխարի հաջողություններ։ Այդ են վկայում հետևյալ թվերն ու փաստերը։

✪ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության 1953 թվականի տարեկան պլանը ամբողջությամբ վերցրած արդյունաբերության գծով կատարվեց 101 տոկոսով։ Արդյունա-

*բերության համախառն արտադրանքն երեք տարվա ընթացքում աճել է համարյա մեկ ու կես անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ մոտ 2,5 անգամ։*

✪ *Միայն 1949 թվականից մինչև 1953 թվականը մեր երկրում կառուցվել են 2.500 արդյունաբերական ձեռնարկություն։ Այդ նույն ժամանակաշրջանում արդյունաբերական հիմնական ֆոնդերը մեծացել են ավելի քան մեկ ու կես անգամ, արդյունաբերության արտադրանքն աճել է 1,8 անգամ։ Այդ տարիներին արդյունաբերական արտադրանքի միայն աճը զգալիորեն գերազանցում է 1940 թվականին արդյունաբերության թողարկած արտադրանքը։*

*1953 թվականին գործարկվեց ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող մոտ 300 նոր ձեռնարկություն։*

✪ *Անցյալ տարի արտադրվել է 38 միլիոն տոննա պողպատ և արդյունահանվել է 320 միլիոն տոննա ածուխ։ Պողպատի արտադրության և քարածխի հանույթի այդ քանակը երկու անգամ ավելի շատ է նախապատերազմյան ժամանակաշրջանում (1940 թ.) թողարկված պողպատի և քարածխի հանույթի քանակից։ Դա նշանակում է, որ միայն պողպատի արտադրության մեջ*



*ձեռք բերված աճը ավելի քան երեք ու կես անգամ գերազանցում է ցարական Ռուսաստանի պողպատի տարեկան արտադրությունը։*

✪ *1950—1953 թ. թ. ընթացքում մեր երկրում նավթի հանույթը ավելացել է գրեթե 19 միլիոն տոննայով, իսկ ցարական Ռուսաստանում տարեկան արդյունահանվում էր միայն 9 միլիոն տոննա նավթ։ Նախառևոլյուցիոն ժամանակաշրջանում Ռուսաստանում արդյունահանվում էր ընդամենը 29 միլիոն տոննա ածուխ, իսկ այժմ ՍՍՌՄ-ում միայն չորս տարվա ընթացքում ածխի հանույթի աճը հասնում է 85 միլիոն տոննայի։*

✪ *1953 թվականին ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը, 1950 թվականի համեմատությամբ աճել է 45 տոկոսով։ Այժմ մեր երկրում յուրաքանչյուր ինը օրում խոշոր արդյունաբերությունը այնքան արտադրանք է տալիս, որքան նախառևոլյուցիոն Ռուսաստանում արտադրվում էր ամբողջ տարվա ընթացքում։*

✪ *Մեր մեծ երկրում, ինչպես միշտ, այնպես էլ անցյալ տարի, հզոր վերելք էին ապրում մեքենաշինությունը և էլեկտրաար-*

դյունաբերությունը։ Անցյալ տարի ՍՍՌՄ-ում չորս անգամ ավելի շատ մեքենաներ ու սարքավորում և երեք անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա արտադրվեց։

✪ 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, 3,8 անգամ ավելի շատ մեքենաներ ու սարքավորում է արտադրվել։ Հինգերորդ հնգամյակի երեք տարիների ընթացքում սովետական մեքենաշինությունը ժողովրդական տնտեսությանը տվել է մոտ 1.800 նոր մեքենաներ ու մեխանիզմներ։ Հաստոցաշինությունը արդեն յուրացրել է ավելի քան 450 նոր տեսակի բարձր արտադրողականության մետաղահատ հաստոցներ և սարքավորումներ։

✪ 1953 թվականին արտադրության միջոցների արտադրության ծավալը 1949 թվականի համեմատությամբ ավելացավ 84 տոկոսով։ Ծանր արդյունաբերության արտադրանքը 1953 թվականին 1940 թվականի մակարդակը գերազանցեց երեք անգամ։

✪ Մեր երկիրը վիթխարի հաջողությունների է հասել էլեկտրիֆիկացիայի զարգացման ասպարեզում։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կատարելագործված առաջավոր տեխնիկան հիմնված է էլեկտրականության կիրառման



վրա, արտադրական պրոցեսների էլեկտրիֆիկացման վրա։

✪ Հայրենական Մեծ պատերազմի սկզբներին ՍՍՌՄ էլեկտրակայաններն արդեն 24 անգամ ավելի էլեկտրաէներգիա էին արտադրում, քան այն արտադրվում էր նախառևոլյուցիոն Ռուսաստանում։

✪ 1953 թվականին Սովետական Միության էլեկտրակայաններն արտադրել են 133 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, կամ 68 անգամ ավելի, քան արտադրվել էր 1913 թվականին և 3 անգամ ավելի, քան 1940 թվականին։

✪ Հինգերորդ հնգամյակի անցած երեք տարում շարք են մտել 24 նոր հզոր էլեկտրակայաններ։ 1953 թվականին շահագործման հանձնվեցին Ուստ-Կամենագորսկի ԳԷՍ-ը՝ Իրտիշ գետի վրա, Գյումուշի ԳԷՍ-ը, Մինգեչաուրի ԳԷՍ-ի առաջին հերթը։ Ընդամենը մեկ տարում հիդրոկայաններում և շոգետուրբինային էլեկտրակայաններում մտցվել է 2.800 հազար կիլովատ կարողություն, կամ 1,6 անգամ ավելի, քան մտցվել էր ԳՈԷԼՌՈ-ի պլանով 10 տարում։ Այս տարի շահագործման կհանձնվեն Կամայի ԳԷՍ-ը և Վոլգայի վրա Գորկու ԳԷՍ-ը, ժամկետից մեկ տարի շուտ կա-

վարտվի Կախովկայի ԳԷՍ-ի շինարարությունը։

✪ Եթե Սովետական Միությունում 1953 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումն ավելացավ 12 տոկոսով, ապա ԱՄՆ-ում 1953 թվականի մարտից սկսված ժամանակամիջոցում արդյունաբերական արտադրությունը կրճատվել է 10 տոկոսով, իսկ պողպատի ձուլումը մինչև 1953 թվականի դեկտեմբեր ամիսը իջել է 22 տոկոսով։ Հազարավոր ձեռնարկություններ ու ֆիրմաներ փակվում են։ Հարյուր հազարավոր բանվորներ դուրս են նետվում փողոց, ավելացնելով գործազուրկների բանակը։

✪ Պարտիան ու կառավարությունը մշտապես հոգ են տանում աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու մասին։ Պարտիայի և կառավարության կողմից ձեռնարկված միջոցառումների շնորհիվ 1953 թվականի երկրորդ կիսամյակում ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը առաջին կիսամյակի դիմաց աճեց ավելի քան 30 միլիարդ ռուբլով։ Այս տարի մեր երկիրը կհասնի լայն սպառման ապրանքների արտադրության այն ծավա-



լին, որը հինգերորդ հնգամյա պլանով նախատեսված է 1955 թվականի համար։

✪ 1953 թվականին, 1949 թվականի համեմատությամբ, ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը ավելացել է 65 տոկոսով, 1954 թվականին լայն սպառման արդյունաբերական ապրանքների և պարենային ապրանքների արտադրությունն ավելացնելու նպատակով կատարվող ներդրումները 1953 թվականի համեմատությամբ կավելանան 84 տոկոսով։ Անցյալ տարվա 7,6 միլիարդ ռուբլու փոխարեն այս տարի այդ նպատակի համար կատարվող ներդրումը կլինի 14 միլիարդ ռուբլի։

✪ Կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության ապրանքների արտադրությունը մոտակա 2—3 տարում պետք է աճի ավելի քան 2 անգամ։ 1956 թվականին պետք է արտադրվեն 3 անգամ ավելի կարի մեքենա և ռադիոընդունիչ, 2 անգամ ավելի հեծանիվ և ժամացույց, քան 1953 թվականին է արտադրվել։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԸ՝ ՄԱՅԻՍԻ 1-Ը

*1. Մայիսի 1-ը աշխատավորների միջազգային համերաշխության օրն է։*

*2. ՍՍՌՄ-ը ամրապնդում է ժողովուրդների միասնությունը խաղաղության համար մղվող պայքարում։*

*3. Օրեցօր ամրապնդվում է ժողովրդա-դեմոկրատական երկրների և Սովետական Միության անխախտ բարեկամությունն ու համագործակցությունը։*

*4. Անխախտ է ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, Սովետական բազմազգ մեծ պետության միասնությունը։*

*5. Սովետական ժողովուրդը է՛լ ավելի սերտորեն է համախմբվել հարազատ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը։*

*6. Սովետական ժողովուրդն անձնվեր աշխատանք է կատարում մեր երկրի տնտեսական և պաշտպանական հզորությունն ամրապնդելու, աշխատավորների բարեկեցությունն անընդհատ բարձրացնելու վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումներն անշեղորեն կենսագործելու համար։*

*7. Մայիսի 1-ը ՍՍՌՄ աշխատավորները դիմա-*



*վորում են աշխատանքային և քաղաքական մեծ վերելքի պայմաններում։*

*8. Լայնորեն ծավալենք նախամայիսյան սոցիալիստական մրցությունը՝ արտադրական պլանները կատարելու և գերակատարելու համար։*

*9. Մայիսմեկյան տոնը դիմավորենք նորանոր հաջողություններով։*

*10. Ժամանակին և բարձր ցուցանիշներով կատարենք ստանձնած պարտավորությունները։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Մայիսի մեկը, *Երկեր, հ. 7, 4-րդ հրատարակություն, էջ 243—248, Հայպետհրատ, 1949։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ*— «Կեցցե՛ Մայիսի մեկը» *Երկեր, հ. 2, էջ 257—263, Հայպետհրատ, 1948։*

*Ի. Վ. ՍՏԱԼԻՆ*— Ճառ պարտիայի 19-րդ համագումարում, *Հայպետհրատ, 1952։*

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ*— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *Հայպետհրատ, 1952։*

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ*— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *Հայպետհրատ, 1953։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ*— ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ։*

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման
միջոցառումների մասին, *ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի*
*որոշումը ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին,*
*ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, առանձին*
*բրոշյուր, Հայպետհրատ, 1953։*

Երկրում հացահատիկի արտադրության հետագա
ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման
մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ըն-*
*դունված 1954 թ. մարտի 2-ին, ընկեր Ն. Ս. Խրուշչևի*
*զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ.*
*մարտի 6-ի համարում։*

Ն. Ս. Խրուշչևի զեկուցումը ՍՄԿԿ Կենտրոնական
Կոմիտեի պլենումում 1954 թվականի փետրվարի
23-ին Երկրում հացահատիկի արտադրության հետա-
գա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրաց-
ման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի*
*21-ի և 22-ի համարներում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիա-
յի Կենտրոնական Կոմիտեի դիմումը բոլոր ընտ-
րողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. փետրվա-*
*րի 11-ի համարում։*

*Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ*— Հոկտեմբերյան Սոցիալիս-
տական Մեծ ռևոլյուցիայի 36-րդ տարեդարձը, զե-
կուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում
1953 թ. նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի*
*1953 թ. նոյեմբերի 7-ի համարում։*

*ԹԵԶԻՍՆԵՐ* Ռուսաստանի հետ Ուկրաինայի վերա-



միավորման 300-ամյակի մասին *(1654—1954), հա-*
*վանություն են տվել Սովետական Միության Կո-*
*մունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի*
*կողմից, տպագրված՝ «Ագիտատորի բլոկնոտ»-ի*
*1954 թ. № 2-ում։*

*Ա. Մ. ՊԱՆԿՐԱՏՈՎԱ*— ՍՍՌՄ ժողովուրդների
անխախտ բարեկամությունը մեծ շարժիչ ուժ է կո-
մունիզմի համար մղվող պայքարում, *Հայպետհրատ,*
*1953։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի
50 տարին *(1903—1953), առանձին բրոշյուր, Հայ-*
*պետհրատ, 1953։*

## ԱՆՇԵՂԾՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*1. Մեր երկրում տարեցտարի ավելանում է հա-*
*ցահատիկի արտադրությունը։*

*2. Խոպան և խամ հողերի յուրացումը հացահա-*
*տիկի արտադրությունն ավելացնելու խոշոր ռեզերվ*
*է։*

*3. Բերքատվության բարձրացումը եղել է և մնում*
*է հացահատիկի արտադրությունն ավելացնելու*
*գլխավոր միջոցը։*

*4. Հացահատիկային կուլտուրաների բերքատվու-*

*թյունը բարձրացնելու համար լայնորեն օգտագործենք տեղական և հանքային պարարտանյութերը։*

*5. Կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ արագ կերպով արմատավորենք ագրոտեխնիկայի առաջավոր եղանակները։*

*6. Ցանքը կատարենք ժամանակին և սեսակավոր սերմերով, բարձրացնենք դաշտային աշխատանքների որակը։*

*7. Ապահովենք օրգանական և հանքային պարարտանյութերի լայն կիրառումը՝ որպես հացահատիկային կուլտուրաների վաղ գարնանային սնուցում։*

*8. Պարտիան և կառավարությունը խոշոր միջոցառումներ են ձեռնարկել տեխնիկական կուլտուրաների արտադրությունն ավելացնելու և այգեգործության ու խաղողագործության զարգացնելու համար։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ —* Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին, *էջ 56—72, Հայպետհրատ, 1952։*

*Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ —* Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *էջ 5—28, Հայպետհրատ, 1952։*

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին,*



*ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ —* ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին՝ *զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1953 թ. սեպտեմբերի 3-ին, Հայպետհրատ։*

Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1954 թ. մարտի 2-ին ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի 6-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎԻ* զեկուցումը ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1954 թվականի փետրվարի 23-ին Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1954 թ. մարտի 21-ի և 22-ի համարներում։*

Ընկ. ընկ. Գ. Մ. Մալենկովի, Վ. Մ. Մոլոտովի, Ն. Ս. Խրուշչևի, Կ. Ե. Վորոշիլովի, Ն. Ա. Բուլգանինի, Լ. Մ. Կագանովիչի, Ա. Ի. Միկոյանի, Մ. Զ. Սաբուրովի, Գ. Մ. Պերվուխինի, Մ. Ա. Սուսլովի, Պ. Ն. Պոսպե-

լովի, Ն. Մ. Շվեռնիկի, Ն. Ն. Շատալինի և Պ. Կ. Պոնոմարենկոյի ճառերը իրենց ընտրողների նախընտրական ժողովներում, տպագրված «Ս. Հ.»-ի մարտի 7-ի, 8-ի, 9-ի, 10-ի, 11-ի, 12-ի, 13-ի, 14-ի և 15-ի համարներում։

---

Խմբագիր՝ Գր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении

№ 7 1954 г.

БЛОКНОТ АГИТАТОРА

ՎՖ 09331 Պատվեր 318 Տիրաժ 8300

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.